# Հայկյան Համակարգի Ներկայացում

## Օրինակարգի դիտարկում

Սույն համակարգը ներկայացնում է ժամանակի հաշվարկի այլընտրանքային (աստղային) կառուցվածք՝ հիմնված սիդերիկական պարբերաշրջան-ցիկլերի վրա, որը թույլ է տալիս հաշվի առնել ժամանակային շեղումը առանց նահանջ տարիների կիրառման: Վերակառուցված է և վերակարգավորված՝ ավելի քան քսանամյա միջգիտական հետազոտությունների արդյունքում, ձևաչափը ներկայացնում է վերաիմաստավորված համակարգ, որտեղ ժամանակը ընկալվում է ոչ թե որպես գծային հաստատուն ընթացակարգով, այլ որպես՝ պարանցիկ և պարուրաձև գործընթաց՝ համահունչ երկնային մեխանիկային և դիտարկման պարագա՝ ժամանակի բնականոն ցիկլայնությանը:

Այս մոդելն էլ ավելի է կատարելագործվել՝ օրացուցային համակարգերի համեմատական վերլուծության, լեռնային շրջաններում դաշտային փորձարկումների և կենսաբանական ու միջավայրային արձագանքների ռեգոնանսային դիտարկումների հիման վրա:

---

# Հայկյան Բուն Տոմար (ՀԲՏ) – Սիդերիկական-Արևային Պարույրային Համակարգ*

Հայկյան ժամանակի համակարգը (ՀԲՏ) դիտարկում է ժամանակը ոչ թե որպես իրադարձությունների ուղղագիծ հաջորդականություն, այլ որպես պարույրային գործընթաց, որտեղ յուրաքանչյուր պարբերաշրջան կապված է նախորդի հետ՝ աստղային և արևային կոորդինատների միջոցով: Ի տարբերություն գծային ժամանակի, որի շարժումը դիտարկվում է որպես ուղղընթաց ընթացակարգ և պահանջում է արհեստական ճշգրտումներ (օրինակ՝ նահանջ տարիներ, տարվա ոչ ճշգրիտ մեկնարկ և այլն), Հայկի պարույրային ժամանակն ընդգրկում է բնական շեղում և պարբերական վերահամաժամեցում՝ թույլ տալով պահպանել երկնային մեխանիկայի համաժամեցման բնականոն սկզբնավորումը, առանց անհարկի և արտաքին միջամտության: Սույն ձևաչափը ժամանակի ընկալումը ձերբազատում է անհարկի հավելումներից, վերկարգավորելով Տիեզերական համընթացության, փոխհամաձայնության՝ ինքնահամաժամեցվող բնականոն  կենսառիթմը:

---

# Հայկը և Օրիոնի Համաստեղությունը

Հայկական Մշակույթում՝ Հայկը ներկայանում է որպես Ամենայն Հայոց Նահապետ,նախապապ, նախասկիզբ և միաժամանակ որպես աստղային երկնքի գերակա՝ Առաջնորդ, ներկայացնելով՝ Հայկ-Օրիոն համաստեղությունը:

---

Ծանոթագրություն

*ՀԲՏ – Հայկյան Բուն Տոմար – Հայկ աստեղատան առաջնորդությամբ ստուգաբանված ճշմարիտ՝  Օրացույց-ժամանակացույց.

## 1. Օրացույցի կանոնակարգը

- Բնօրինակը- Աստղա - Սիդերիկական-Արևային պարույրային օրացույց
- Կառուցվածք. 360 սիդերիկ օր + Հավելիաց (ավելացված 5 արևային կամ 6 հայկյան օր) → շեղման շրջափուլ = 365.2 արևային օր
- Որոշիչներ. համակարգված է Հայկ-Օրիոն համաստեղության՝ Հայկ-Օրիոնի δ (Կշիռք-Մինտակա) և Հայկ-Օրիոնի α (Հայկի Ուս, Բետելգեյզե) աստղերի պարուրաձև շեղման առաջընթացի ընթացակարգային հիմնադրույթներով..
- Ֆունկցիա. Համաժամեցնում է աստղային և արևային ցիկլերը՝ առանց նահանջ տարվա անհրաժեշտության

---

## 2. Երկնային և աշխարհագրական առանցքներ

Հիմնական համաստեղություն.  Հայկ-Օրիոն աստեղատուն

- Մեկնարկային կետ. դիտարկման հիմնակետ՝ Հայկ-Օրիոնի δ — Կշիռք-Մինտակա աստղ

Կողմնորոշում

- Լայնություն: 39.38° Հյուսիս
- Երկայնություն: 46.26° Արևելք

- Դիտվող հորիզոնի բարձրություն: 11°
- Ազիմուտ: 98°, Տաթևի Սյան կողմնորոշումը՝ դիտարկան դիտակետից.
- Ժամային գոտի: UTC+4
- Ամսաթիվ: Օգոստոսի 11, ժամը 04:00

---

- Վերակայման կետ, Օգոստոսի 5-ին,. Օրիոնի α — Բետելգեյզէ

Կողմնորոշում

- Լայնություն: 39.38° Հյուսիս
- Երկայնություն: 46.26° Արևելք
- Դիտվող հորիզոնի բարձրություն: 11°
- Ծագում (դիրք): α = 5ժ 56ր (աստղագիտական վերելք α = 6ժ 0.0ր)
- Հակում: δ = +7° 27'20"
- Ազիմուտ: 90°
- Ժամային գոտի: UTC+4
- Ամսաթիվ: Օգոստոսի 5, ժամը 04:00

Միջոցառում

- Բացում է Հավելյաց տարեկապը և նախանշում սիդերիկ վերակայումը

---

- Ջրոյական ժամ.Հայկ - Օրիոնի δ Կշիռք - Մինտակա

Կողմնորոշում

- Լայնություն: 39.38° Հյուսիս
- Երկայնություն: 46.26° Արևելք
- Դիտվող հորիզոնի բարձրություն: 11°
- Ծագում: ἀ = 5ժ33ր
- Հակում: δ =-0°15′57″
- Ազիմուտ: 98°
- Ժամային գոտի: UTC+4
- Ամսաթիվ: Օգոստոսի 5, ժամը 04:24

# Հավելյաց — Ժամանակից դուրս շրջան

Միջոցառում

- Մինտակայի 360-րդ ծագումը համապատասխանում է վերջինիս կայացմանը, երբ օգոստոսի 5-ին, ժամը 04:24-ին, հետևյալ կոորդինատական ցուցմունքներով, ազիմուտ 98°, բարձր. 10.15°,α = 5ժ 33′, δ = -0°15′57″, տվյալ գերադիր աստղը փակում է տարեկան շրջապտույտի՝ պարույրը:
- Երկնային պարանցիկ ժամանակային օղակների հավասարակշռում և համահարթեցում:
- Ջրո Ժամ և Ջրոյական Ժամանակի Շարունակություն:

Հավելյաց (հին հայկյան օրացույցի լրացուցիչ ամիսը):

- Ժամանակահատված՝ օգոստոսի 5, ժամը 04:24-ից մինչև  օգոստոսի 11, ժամը 04:00-ը:.
- Նպատակ՝ վերահամաժամեցում և տիեզերական ներդաշնակեցում:

---

# Կշիռք-Մինտակա — ՀԲՏ պարույրի սկիզբն ու ավարտը

Հայկյան մոդելում ամեն ինչ սկսվում է և ավարտվում  Հայկ-Օրիոնի՝ δ Կշիռք- Մինտակա աստղով:

Այս աստղը հանդիսանում է «Հայկյան Բուն Տոմարի» երկնային Հասարակածային գոտու հիմնադիր կետի ցուցիչ - մարկերը: Նրա  ծագումը օգոստոսի 11-ին՝ ազիմուտ 98° և վերոհիշյալ աստղագիտական ցուցմունքներով, ճշգրիտորեն ամրակայում - ֆիքսում է սիդերիկ տարվա սկիզբը: Բայց Կշիռք- Մինտական ոչ միայն սկիզբ է, այլև՝ ժամանակի շարժման կայուն առանցք:

Ամեն ամսվա սկզբում, չնայած վերջինիս օրական շեղմանը, Կշիռք-Մինտական ծագում է երկնակամարի միևնույն հիմնակետումկետում.

Օրական առաջընթացի ընթացակարգը.

Սկզբնավորվելով իր երկնային սկզբնակետից (Օգոստոսի 11), Կշիռք - Մինտակայի առաջնթացը 6 օրում կազմում է ուղիղ՝ 24 րոպե, մեկ ամսում 120 րոպե, որը հավասար է 30.5000001 օրվա × 12 = 366.0000012 : 360 սիդերական օրով = 1,01666667, այս համակարգում կարգավորման սինգուլյար հաստատունն է հանդիսանում՝ 0.5 կոնստանտը, որը իր բնույթով հանդիսանում է՝ օկտավային աստիճան փոխադրման արժենիշ, օրինակ՝ 441 x 0.5 = 220.5՝  օկտավ ներքև կամ 441:0.5 = 882 մեկ օկտավ բարձրության թվային արժեքը (441հերցը երկրորդ օկտավայի լյա նոտան է և երաժշտալադի կամերտոնը): Սույն դրույթը նշանակում է, որ ժամանակի հաստատունները գործում են են այլ համակարգներում, որտեղ հանդիսանում են որպես հիմնարար կիրառական հաստատուններ: Եվ սա միակ օրինակը չէ.

Ժամանակի աստղային կողմնորոշման՝ կողմնացույց.

- Հյուսիսային լայնության 39.38°.
- Արևելյան երկայնության 46.26°.
- Ազիմուտ՝ 98°.
- α = 5ժ33′, δ= −0°15’57”:

Այն դառնում է ոչ միայն աստղագիտական կողմնացույց, այլ նաև ժամանակի համաժամեցման մեխանիզմ՝ օրական և տարեկան չափումների հիմք-հիմնաքար:Կշիռք-Մինտակայի դիրքը կանխորոշում է նաև պրեցեսսիոն պարուրաձև շրջապտույտի

նախացուցանիշը: Հավելենք, որ Հայկի Համաստեղությունը արդի ժամանակաշրջանում դիրքավորված է երկնային հասարկածային գոտում, այն բաժանելով  երկու մասերի՝ հյուսիսային և հարավային կիսագնդերի: Այդպիսով այն հանդիսանալով Հասարակածային համաստեղություն, կարևորվում է որպես՝ առանցքակենտրոն աստեղատուն:

Այս պարագայում հատկանշական է՝ Հայկ - Օրիոնի կենտրոնական աստղերի դիրքավորումը, որոնց առանցքակենտրոն դիրքը որպես ժամանակահաշվարկի սկզբնային հենակետ, ամենայն ճշգրտությամբ համապատասխանում է՝ ժամանակի տոմարական կարգավորումների և հաշվարկների համար: Ինչպես գիտենք Հայկ - Օրիոն համաստեղության գրխավոր - Ալֆա աստղն է՝ Հայկի Ուս - Բետելգեյզե աստղը, որի երկնային տեղակայման ցուցանիշներն են՝ ըստ կոորդինատական ցանցի ցուցմունքների՝ ատղագիտական վերելք՝ α=ժ6ժ0.0'ր ( ավելի ստույգ ,α=5ժ 56′ ),  δ= +7° 27'20'' և եթե Հայկի Ալֆան կառավարում և կոորդինացնում է արևային տարվա աստղագիտական կայացումները՝ գարնանային - աշնանային գիշերահավասարներ, ամառային - ձմեռային արևադարձներ և այլն, ապա Հայկի δ Կշիռք - Մինտական, որը դիրքավորված է երկնային հասարակածի վրա (δ= -0°15'57'') այս պարագայում հանդիսանում է որպես երկնային առանցկակենտրոն հիմակետ:

---

### 3. Աշխարհագրական առանցքներ

Տաթևի Առաքելոց վանք և Գավազանասյուն

- Լայնություն՝ 39.38° Հյուսիս
- Երկայնություն՝ 46.26° Արևելք
- Ազիմուտ՝ 67.5°
- Ժամային գոտի՝ UTC+4

---

# Տաթև / Դիտորդի Կետ

Տաթևի Վանական Համալիրի գլխավոր՝ <<Առաքելոց>> վանքի առանցքը շեղված է 22.5° դեպի հյուսիս, ինչը համապատասխանում է 67.5° ազիմուտին:

Սույն հիմնադրույթը աստղագիտական գիտակցված ճշգրտում է, քանի որ Տաթևը հանդիսանալով որպես Հայ Առաքելական Եկեղեցու՝ կրոնական  կենտրոն,

նախատեսված էր( և մինչ օրս էլ գործում է) որպես՝ աստղադիտարան (Դիտանոց), այսինքն Տիեզերագիտական Գիտելիքների ուսումնական և կիրառական՝ Կենտրոն - Համալսարան (Յոթ ազատ գիտությունների դասավանդման կենտրոն):

Այս դիրքորոշումը (67.5°ազիմուտ) համընկնում է օգոստոսի 5-ի արևածագի հետ ( ուղիղ ժամը 06:00-ին) — երբ Հայկյան սիդերիկ տարին ավարտվում է, և սկսվում է պարույրի շրջադարձի նախապատրաստությունը:

---

## Տարածական և Էներգետիկ հանգույց

Երկար տարիների գիտական հետազոտությունների արդյունքները փաստում են, (բիոսկոպիկ և երկրակենսաֆիզիկական չափումներ), որ՝ Տաթևը կառուցված է Էներգոակտիվ, հզոր կենսատարածական միջավայրի կենտրոնում:

Տարածքը՝

- Հարտմանի գեոդաշտային ցանցի բացակայություն.
- Դեռևս անբացատրելի կենսադաշտերի առկայություն, որոնք խիստ դրական ազդեցություն են ցուցաբերում մարդկանց առողջության նկատմամբ, կարգավորելով և բալանսավորելով նրանց ինքնազգացողությունը, հետևապես կենտրոնավայրի ընտրությունը պետք է համարել ոչ պատահական, այլ գիտակցված և գիտականորեն հիմնավորված: Եվ իհարկե պատահական չէ Տաթևի և Գավազանասյան տեղակայության ընտրությունը, քանի որ Հայ Իմաստասիրաց դասը խորապես տիրպետում էր սույն բարձրարժեք Տիեզերագիտության հիմնադրույթներին, Նրանք հաստատապես գիտակցում էին, որ տվյալ աշխահագրական և երկնա - երկրային դիրքը՝ խստիվս համապատասխան և համարժեք է՝ ժամանակի զրոյական գոտիականության տիեզերագիտական հիմնարար և բնագիտական հիմնադրույթներին:

---

## Դիտանոց և Գավազան

Տաթևի վանական համալիրի գլխավոր վանքի աջ կողմում՝ վեր է խոյանում մի բազմանկյուն կառույց, որն իրենից ներկայացնում է դիտարկման հարթակ և կոչվում է՝ Դիտանոց, այսինքն աստղադիտարկման՝ Դիտակետ: Այստեղ, ամեն անկյուն ունի իր ճշգրտված աստղագիտական ազիմուտային ուղղությունը և որի գլխավոր տոպոցենտրիկ

դիտակետն է՝ Գավազանասյան դիտարկման անկյունակետը, միտված դեպ՝ 98° ազիմուտային գերադիր աստիճանակարգ:

Հենց այստեղից էլ հին հայկական իմաստասիրաց դպրանոցի աստղագետ գիտնականները իրականացնում էին՝ ժամանակային, աստղագիտական և տոմարագիտական չափումները:

Կենտրոնում կանգնած է Գավազանասյունը՝

- Այն՝ Ութանկյուն կառուցվածք է,
- Բարձրությունն է՝ 8.3 մետր
- Հիմնահենքը՝ 6+6, ընդհանուր 12 ութանկյուն քարաշարքով, որոնք խորհրդանշում են 6-12-24-72-144 և այլ ժամանակային կոնստանտները:
- Յուրաքանչյուր ութանկյան կողմը՝ 45° աստիճան է, միտված կոորդինատական ցանցի երկնային հիմնակետերին և վերջապես 360° աստիճանակարգով լրում է՝ երկնա-երկրային սիդերական մեկ շրջանը (տարեկան և Մեծ Աստղային՝ պրեցեսսիոն շրջանը):
  Գագաթին՝ պարուրաձև գունդն է,որը տեսականորեն պատկերում է Երկիր մոլորակի պարուրաձև և պարանցիկ՝ շրջապտույտը: Եվ վերջապես «Երկրագնդի» վրա տեղադրված է կամարձև խաչքարը, որը նախանշում է երկնակամարի հավասարաթև խաչ կազմող հավասարակշռության ժամի՝ նշակետը:

---

## Գավազանի դերը Հայկյան համակարգում

Գավազանը տիեզերական գիտակցության և հիշողության առանցք է:

- Օգոստոսի 11-ին, ժամը 04:00-ին՝ Հայկ - Օրիոնի Ծամփրուք - գոտին ի վեր տի կալ (вертикально), ուղղահայաց վերընթացով տեղակայվում է Տաթևի Գավազանասյան՝ երկնակամար նախանշող, երկնային տանիքի բարձրակետին:
- Այդ աստեղային կայացումը նշանավորվում է, երբ Հայկ - Օրիոնի գոտու երեք աստղերի հետ համատեղ՝ Կշիռք - Մինտակա գահակալը հասնում է իր երկնային նշանակետին՝ ազիմուտ 98°, α=5 ժ 33 րոպե, δ=-0°15′57″ և ուղղահայց դիրքով «կանգնում են» Գավազանասյան ճիշտ՝ գագաթին:( Սակայն այս աստղային կայացումը կատարվում է նաև օգոստոսի 5-ին, ժամը 04:24 րոպեին, երբ Հայկ - Օրիոնի գոտին ցուցաբերում է նմանատիպ դիրքավորում, միայն թե 24 րոպե ավելի ուշ և դրանով իսկ հայտարարում է՝ Տիեզերական ժամանակի Մեծն Ջրո

ժամը՝ Zero point kontinium)

Սույն աստղային իրադարձությունը հանդիսանում է ժամանակարարի սկզբնավորման պահ (ֆազային վերագործարկան կետ), երբ ժամանակը վերագործարկում և սկզբնավորվում է Նավասարդ - Նոր տարվա հերթական պարույրը:

### Գավազան — Տիեզերական Հիշողության Սյուն

Գավազանը պարզապես քարե սյուն չէ: Այն տիեզերական հիշողության՝ երկնա - երկնային ժամանակահաշվարկային առանցքի՝ ցուցիչն է, երկնային ժամացույցի, աստղապահի ճիշտ վարկյանի՝ լուռ պահապանը: Այն, աստղային կանոնակարգի առանցքակենտրոն ճշգրտությամբ տեղակայված է  Տաթևի վանքում և մարմնավորում է Հայկյան աստղագիտական համակարգը՝ որպես բնագիտական գործառույթ՝ իր ուրույն ձևի, կարգի, կանոնի և բնական ու անխոտոր օրինաչափության մեջ:

---

# Մեծ Պարույրի Վերակայումը

Ամեն տարի օգոստոսի 11-ին, ժամը 04:00-ին, երբ  Կշիռք - Մինտական իր ուղղահայաց դիրքավորումով ծագում է Գավազանասյան գլխավերևում, ժամանակի Մեծն Պարույրը՝ վերագործարկվում է:

- Գավազանը նաև հանդիսանում է արևային ստվերաչափ գնոմոն և արժևորվելով նաև որպես արևային ժամացույց, գերճշգրտությամբ ցուցում է գարնանային գիշերահավասարի, ամառային արևադարձի, աշնանայի գիշերավարի և ձմեռային արևադարձի արևային օրերի ճշգրիտ պահն ու ժամը: Իսկ Օգոստոսի 5-ին, երբ արևը ուղիղ 06:00-ին, ծագում է 67.5° ազիմուտից և հաստատում արևային զրոյական ծագման և աստղային ժամանակի համաժամեցման պահը, այնուհետ արևատեսի առանցքակենտրոն ժամը գալիս է 7 ժամ անց, երբ՝ Գավազանը, որպես արևային՝ ստվերաչափ -  ժամացույց, արևի ստվերի ցուցմունքով՝ուղիղ 13-ին ազդարարում է արևային ծագման տոմարագիտական գերակա նշանակություն ունեցող պահը՝ α= 9 ժ 0.0 ր, δ= +20° 0', ազիմուտ 180°:

Տաթևի Գավազանասյունը՝ Հայ Իմաստասիրաց հանճարեղ մտքի, այն միակ՝ կենդանի «ժամացույցն» է, որն անխոս լռությամբ թերթում է ժամանակի հավերժության պարույրը և  երբեք չի ծերանում, քանզի՝ մեռնելով դարձյա՝լ հառնում է և հավերժաբար նորացնում է՝ համայնն ու ամենան: Նա համբերատար և սիրաhոժար կամքով սպասում  և հուշում է համայն մարդկությանը՝ Մեծն Նարեկացու աստեղային պատգամը՝ « անսպառորեն մնում է համայնն ամեն ինչի մեջ, ամբողջությունը՝ ամեն մի մասում, էությամբ՝ երկնում, իսկությամբ՝ երկրում, անհատ մարդկությամբ և աստվածությամբ իր՝ լիակատար, փշրվելով միշտ անթիվ մասերի՝ բաշխվում է անվերջ, որ միավորի այդպես բոլորին որպես մի մարմին իր՝ գլխի համար…»:

---

**Դիտորդի Արտահայտիչ Դերը Հայկյան Մոդելում**

Հայկյան հայեցակարգում անհատը դիտարկման կողմնակի և անիրատես վկան չէ, այլ ժամանակի համաժամեցման գործընթացում արժևորվում է որպես անմիջական,  երկրա - երկնային դիտորդ - կապավոր:

Երբ՝ Երկիրը, Արևն ու աստղերը համահարթեցվում և փոխհամաձայնության դաշինք են կազմավորում, անհրաժեշտ է ևս մեկ տարր՝ մարդկային գիտակցությունը:

- Դիտորդի ներկայությունը ճիշտ պահին և ճիշտ վայրում՝
 փակում է համաժամեցման շրջափուլը և մարդկային գիտակցության համատեղումը հզորացնում է համագործունեության ռեզոնանսային էֆեկտը: Սույն հինադրույթը զուգահեռվում է քվանտային այն սկզբունքին՝ ըստ որի դիտորդը իր գիտակցությամբ ազդում է որևէ համակարգային գործառույթի վրա:
- Այդպիսով, ժամանակն ընկալելով որպես պարուրաձև շարժում, դիտորդը դառնում է կապող օղակ աստղային կարգի և ժամանակի խորքային ընկալման միջև որպես բնատուր միջանկյալ՝ միջնորդ:

---

# Հայկյան Օրացույցի Կառուցվածքը

Հայկյան Բուն Տոմարը՝ ՀԲՏ-ն, Տիեզերական ճշգրտությամբ համաժամեցված և սիմմետրիկ՝ համակարգ է, որը կառավարում է՝ ժամանակը, ներդաշնակ (հարմոնիկ) հաստատունների միջոցով:

Այն փոխարինում է նախանջ տարիների արհեստական հավելումները՝ սիդերական պարույրի մաթեմաթիկորեն ճշգրիտ հարաբերակցությունների միջոցով:

:

---

## Հայկյան Պարույրի Առաձգականության Ընդլայնման Հաստատունը =

## 1.01666667

- Սահմանում՝ Սիդերական ցիկլի երկարության և արևային շեղման հարաբերակցությունը (366 օրվա ընթացքում)
- Բաղադրիչներ՝
  - 366 ÷ 360 = 1.01666667
  - 1464 ր. (24 ժ. 24 ր.) ÷ 1440 ր. (24 ժ.) = 1.01666667
- Դերը՝ Հայկյան գլխավոր հաստատունը, որը կառավարում է
  - Օրական և տարեկան սիդերիկ շեղումը
  - 4-ամյա պարույրային վերագործարկման շրջանակը

---

## Սիդերական օր և տարի

- Ամսական կառուցվածք՝ 12 ամիս × 30 սիդերիկ օր
- Սիդերիկ օր = 23ժ 56ր 4վ → Ամեն օր  Կշիռք - Մինտական ծագում է մոտ 4 րոպե շուտ
- Տարեկան արդյունքում՝

  → 4 ր. × 360 օր = 1440 ր. = 24 ժամ

- Այսպիսով, Մինտական տարվա ընթացքում ծագում է 366 անգամ, մինչդեռ Արևը՝ 365 անգամ:

---

## Սիդերիկ-Արևային Փոխհատուցում

- Երբ հաջորդ տարվա օգոստոսի 11-ին Կշիռք - Մինտական նույն ժամին՝ միևնույն կետում է.

  → ապացուցվում է ամբողջական սիդերիկ տարվա ավարտը՝ առանց նախանշ ավելացումների

- Սիդերիկ շեղման օրական կուտակումը տրամադրում է մեկ «անտեսանելի ավելացված օր»՝ առանց արհեստական միջամտության:

Հայկյան Դրեյֆի Աղյուսակ (Haykyan Drift Table) in Armenian:

| Ամիս | Սկսման Ամսաթիվ | Հաջորդ Ամիս | Արևային Տևողություն | Սիդերիկ Օրեր | Կուտակված Շեղում |
|---|---|---|---|---|---|
| Ամիս #1 | 2025 Օգս 11, 04:00 | 2025 Սեպ 10, 02:02 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 1ժ 58ր |
| Ամիս #2 | 2025 Սեպ 10, 02:02 | 2025 Հոկ 10, 00:04 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 3ժ 56ր |
| Ամիս #3 | 2025 Հոկ 10, 00:04 | 2025 Նոյ 8, 22:06 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 5ժ 54ր |
| Ամիս #4* | 2025 Նոյ 8, 22:06 | 2025 Դեկ 8, 20:08 | 29 օր, 22ժ 02ր | 30 (29) | 7ժ 52ր |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Ամիս #5 | 2025 Դեկ 8, 20:08 | 2026 Յուն 7, 18:10 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 9ժ 50ր |
| Ամիս #6 | 2026 Յուն 7, 18:10 | 2026 Փետ 6, 16:12 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 11ժ 48ր |
| Ամիս #7 | 2026 Փետ 6, 16:12 | 2026 Մար 8, 14:14 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 13ժ 46ր |
| Ամիս #8 | 2026 Մար 8, 14:14 | 2026 Ապր 7, 12:16 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 15ժ 44ր |
| Ամիս #9 | 2026 Ապր 7, 12:16 | 2026 Մայ 7, 10:18 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 17ժ 42ր |
| Ամիս #10 | 2026 Մայ 7, 10:18 | 2026 Յուն 6, 08:20 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 19ժ 40ր |
| Ամիս #11 | 2026 Յուն 6, 08:20 | 2026 Յուլ 6, 06:22 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 21ժ 38ր |
| Ամիս #12 | 2026 Յուլ 6, 06:22 | 2026 Օգս 5, 04:24 | 29 օր, 22ժ 02ր | 30 | 23ժ 36ր |
| Ամիս #13 (Ավելյաց) | 2026 Օգս 5, 04:24 | 2026 Օգս 11, 04:00 | 5 օր, 23ժ 36ր | 6 | 24ժ 00ր |

Նշում՝ Հավելյաց փուլի ընթացքում՝ օգոստոսի 5-ից 11-ը, Հայկյան պարույրը վերականգնում է կուտակված արևային շեղումը (24ժ), և աստղային համակարգը ամբողջապես համաժամեցվում է նոր տարվա համար:

### Տիեզերական Զրոյական Ավր - Պահ

📍 Ամսաթիվ: Օգոստոսի 5

📍 Ժամանակ: 04:00 (UTC+4)

📍 Վայր: Տաթևի վանք

📍 Աստղ: Հայկի Ուս - Բետելգեյզե (α Օրիոնի), α=5ժ 56′, δ=+7°26′9″

📍 Ազիմուտ: 90° (ուղիղ արևելքում),α=6ժ 0.0′

🔹 Իմաստ:

Այս պահը նախանշում է, որ Երկիրը ավարտել է 360 ամբողջական սիդերիկ պտույտը՝ ֆիքսված աստղերի նկատմամբ:

Սա աստղային համակարգի սիդերական վերակայման պահն է:

---

### ✨ 04:24 — Զրոյական Ժամանակի Շարունակություն

📍 Աստղ:Կշիռք - Մինտակա (δ Օրիոնի)

📍 Ազիմուտ: 98°, α=5 ժ 33′, δ=-0°15′57″

📍 Ժամը: 04:24 (օգոստոսի 5)

🔹 Իմաստ:

- Կշիռք - Մինտակայի 360-րդ ծագումը՝ Օգոստոսի 5-ին՝ ժամը 04:24-ին, ամենայն ճշգրտությամբ համապատասխանում է նույն կետին, որտեղ այն դիրքավորվել էր նախորդ տարվա օգոստոսի 11-ին՝ ժամը 04:00-ին

- Ապացուցելով սիդերական տարվա ամբողջական լրումը առանց նահանջ օրերի.

- Սույն աստղագիտական և տոմարական հինադրույթը հանդիսանում է «Զրոյական Ժամանակի Շարունակության», Տիեզերական զրոյական ցիկլի լրման և նոր պարույրի բնականոն համադրության և նախասկզբնավորման՝ պահ:.

---

## 🌀 Պարույրի Փուլային Վերամուտ

🔹 Հայկյան համակարգում, ժամանակը ոչ միայն ավարտվում է, այլ մտնում է նոր պարույրի մեջ՝

- 5 օգոստոսի 04:24 → պարույրի փուլային հանգույց
- 6 օր՝ 4 րոպե շեղումով → վերակարգավորում և համաժամեցում.

🧭 Սա նման է ժամանակի ներշնչամանը՝

⟶ 24ժ 24ր կուտակված շեղում՝ 24 րոպե.

⟶ 1440ր = 24ժ (մեկ ամբողջ օր) վերականգնում, վերակարգավորում

Ժամանակաընթացքի հետագիծը ուղիղ գիծ չէ, այն պարուրաձև վերասլաց շրջապտույտ է, որը պարանցիկ շարժմամբ սլանում է պարույրի ֆազային միջանցքով:

## Արևային Համաժամեցում - Սինքրոնացում — Արևի Վերելք Տաթևում

📍 Ամսաթիվ: Օգոստոսի 5

📍 Ժամանակ: 06:00 (UTC+4)

📍 Լայնություն / Երկայնություն: 39.38° Հ. / 46.26° Ա.

📍 Ազիմուտ: 67.5°, α=9ժ0′.0′′, δ=+17°30′50′′

📍 Աստղային Մարմին: Արև

🔹 Միջոցառում

Արևը ծագում է Տաթևի գլխավոր վանքի երկրակողմնորոշման ճշգրիտ դիրքից, որը կազմակերպված է հետևյալ ցուցանիշներով՝ ազիմուտ 67.5°,α=9ժ 0′.0′′, δ=+17°30′50′′.

Արևի ծագումը հորիզոնից տեղի է ունենում, Հայկի Ուս - Բետելգեզե ալֆա աստղի սիդերական վերակայման պահից (ժամը 04:00-ին) 2 ժամ անց: (Հիշեցում. այդ օրը օգոստոսի 5-ին Կշիռք -Մինտակայի դիրքավորումը իր հիմնակետին՝ ազիմուտ 98°, Հայկի գոտին Տաթևի Սյան վրա կայանում է 04:24 րոպեին): Հիշեցում. ըստ հայկյան համակարգի արևային տարին՝ աստղային կայունացմամբ, կազմում է՝ 365.2 օր (ոչ թե 365.25 օր ), քանի որ, օգոստոսի 5-ին արևը զրոյական կետից (Հորիզոնական եզրագիծ=

0°)  ծագում է՝ արևային աստղագիտական կայացումների՝ կոորդինատոր - Հայկի Ուս - Բետելգեյզե աստղի կայունացման պահից՝  ժամը 04:00-ից (ազիմուտ 90°, α=6ժ 0.0') ուղիղ 2 ժամ անց՝ 06:00-ին, այս ճշգրտությունը թույլ է տալիս ստանալ արևային տարվա օրերի հաստատուն հայտարարը, 2 ժամվա հարաբերակցությունը կազմավորում է հետևյալ թվային պատկերը՝ ստանում ենք մեկ օրվա մեջ 2 ժամվա համաչափական գործակիցը՝ (1/12 ) = 0.08333 կամ՝ 1°  որը արևի մեկօրյա ընթացակարգի արժեքն է և հետևապես՝ արևը օրեկան աստղերի համեմատ տեղափոխվելով՝ 1° , այսինքն՝ 0.08333 ժամանակային գործակիցով, ստացվում է 360 =30° անկյուն տեղափոխություն, իսկ 4 տարվա ընթացքում 30°, 60°,90° այնուհետ զրոյացում, հետհաշվարկ և վերակայում:

🔹 Իմաստ

- Արևային սույն դիրքավորումը իրագործում է արևային ժամանակի զրո ժամը՝ տավա կտրվացքով և վերակայման հաստատուն ընթացակարգը՝ 4 ամյա ցիկլի մեջ:.
- Այդ պահին՝ Երկիրը վերադառնում է դեպի Արևը՝ ավարտելով աստղային ընթացակարգի 360° ական շրջապտույտը, ցուցաբերելով զրոյական նշակետ և թվաբանական ճշգրտությամբ ձևակեպում է աստղային ընթացակարգի հետագա առաջընթացը:.

---

## 🌱 Նավասարդի Սկիզբը (Հայկյան Նոր Տարի)

📍 Ամսաթիվ: Օգոստոսի 11

📍 Ժամանակ: 04:00 (UTC+4)

📍 Աստղ: Կշիռք - Մինտակա (δ Օրիոնի)

📍 Ազիմուտ: 98°, α=5 ժ 33 րոպե,δ=-15°15′57″

🔹 Միջոցառում

- Կշիռք - Մինտակայի (Հայկ - Օրիոնի գոտու երեք աստղերի հետ համատեղ) վերելքը Տաթևում՝ ուղղակիորեն Գավազանի վերևում.
- Նշանավորում է նոր աստղային տարվա սկիզբը.
- ԵՎ խորհրդանշական և ուղղակի առումով՝ սա «վերամուտ է, զմուտ՝ մուտք է դեպ՝ աստղային տարածաչափության՝ կալ, այսինքն՝ դաշտ»

---

## 🔁 Սիմվոլիկ Բացատրություն — 4-րոպեանոց Դրեյֆը՝ Պարույրի Շարժիչ

- Սիդերիկ տարին չի պարփակվում միևնույն կետում, այլ իրականացնում է նոր պարուրաձև՝ շրջապտույտ: Ժամանակը չի կրկնվում, այլ բարձրանում է պարույրով:
- 1 արևային տարին = 365 արևային շրջապտույտ է.
- 1 աստղային տարին = 366 աստղային շրջապտույտ է.

➡️ Մեկ սիդերիկ, ավելի ճշգրիտ՝ աստղային օրը = 4 րոպե շուտ է կայանում, համեմատած նախորդ օրվա արևային վերելքի հետ:( Չատկանշում, եթե ժամանակահաշվարկը կատարվում է Կշիռք - Մինտակա աստղի՝հիմնակետից, ապա 4 րոպեն տարեկան շրջապտուտի սահմանակարգում հանդիսանում է որպես կայուն՝ ամբողջ ):

➡️ 4 րոպե × 360 օր = 1440 րոպե = 24 ժամ → ամբողջական լրացուցիչ պտույտ, այստեղ պետք է հատկանշել, որ 360 սիդերական օրում 1440 րոպեն հավաքում է Հայկի այֆա աստղ՝ Հայկի Ուս - Բետելգեզեն, Իսկ ժամանակի պարույրը կառուցելու ճանապարհին, Օգոստոսի 5-ին, երբ Բետելգեյզեյի ծագումը կայանում է ուղիղ ժամը՝ 04:00-ին, այդ նույն ժամանակ Հայկ - Օրիոնի Կշիռք - Մինտական իր դիրքավորման հիմնակետում լինում է՝ 04:24 րոպեին, որից հետո այն անցնելով ուղիղ 6օր, հավելյաց 24 րոպեն, այսպես ասած՝ « ետ է հավաքում»: «Օձը կլլում է սեփական՝ պոչը»:

Այս զարմանալի գործընթացը իրականանում է, այն պատճառով, որ հենց այդ զրոյական պահից սկսած ժամանակի պարույրը կատարում է իր պարանցիկ, պարուրաձև շրջադարձը, որի ընթացքում երկրային հարթության դիտորդի տեսանկյունից ժամանակը կարծես ցուցաբերում է ժամանակի հետընթաց կորուստ և ամեն օր 4 րոպե պակաս հետընթացով հավելյաց 24 րոպեն ետ է հավաքում և 6 օրվա մեջ ազատվելով ավելորդ 24 րոպեից, Կշիռք - Մինտական կայունևանում է իր անցյալ տարվա գերակա դիրքում՝ ազիմուտ 98°, բարձրությունը +10.00°, α=5 ժ 33 րոպե, δ= - 0°15'57",

Ամրագրում և հաստատում է ժամանակը ուղիղ 1440 րոպե հաստատուն աստղային ամբողջով, որն է՝ 24 ժամ, մեկ՝ ամբողջ օր:

---

## 🧬 Հավելյաց — ժամանակի բնական ֆազային վերահավասարեցում

- Սիդերիկ շեղումը չի ուղղվում արհեստական օրով, այլ

  → 6 օր (հավելյաց) ժամանակահատվածում, աստղային պարուրաձև համակարգը վերականգնում է կուտակված 24ժ 24ր շեղումը

✅ Այսպիսով, Հայկյան համակարգը լրացնում է 365.00000 արևային օր՝ առանց որևէ նահանջ թվերի՝ միջամտության:

Ետգրություն.

Դաս՝ Իմաստասիրաց.

« Ծանի՛ր որդի, զի այս ի պատճառէ Հասարակածին եղև, զի Հասարակածն յորժամ ի Նավասարդ եմուտ, զանխլաբար թիւ աւելի ի ներքս եմոյծ և ոչ գիտացեալ բազմաց, շփոթեաց զամենայն կանոնեալս առաջնոց հարցն և յայնմհետէ ոչ բերէ ուղիղ զթուականսն...»

Միջնադարյան տոմարագետ՝ Հակոբ Ղրիմեցի

---

## 📅 Համեմատական Աղյուսակ — Գրիգորյան vs Հայկյան

| Համակարգ | Սկիզբ | Իմաստ |
|---|---|---|
| Գրիգորյան օրացույց | Հունվարի 1, 00:00 | Գծային, արհեստական ժամանակային վերակայում |

| | | |
|---|---|---|
| Հայկյան Բուն Տոմար | Օգոստոսի 5, 04:24 | Զրոյական ժամանակի Շարունակություն |
| Նավասարդ (նոր տարի) | Օգոստոսի 11, 04:00 | Աստղային տարվա պարույրի նոր շրջապտույտի սկիզբ |

## Եզրափակիչ Բացատրություն — Զրոյական ժամանակի Տիեզերական Կետ

🕓 Օգոստոսի 5, 04:24 — այս պահը Կշիռք աստղի պարույրի 360-րդ  շրջապտույտն է, երբ տարվա ընթացքում, ամենայն ճշգրտությամբ այն կայանում է երկնային  միևնույն կետում:

→ Սույն շրջադարձային իրադարձությունը ստեղծում է Տիեզերական Զրոյական Պահ՝ երկնա - երկրային ժամանակին ընձեռնելով զրոյական մեկնարկ: Այս իրողությունը  ոչ թե ժամացույցի կախարդանքն է, այլ՝ ճշգրիտ մաթեմատիկական կոնվերգենցիա՝

որտեղ ժամանակը վերակազմավորվում է, որպես անխափան մեխանիկա:

💠 ժամանակի ընթացակարգը ոչ թե փակ շրջան է, այլ՝ պարույր, վերասլաց պարուրաձև շարժում, որի հիշողությունն անսպառ է և հաստատուն:

💠  Ամեն անգամ պարույրը  վերադառնալով միևնույն հիմնակետին կայացնում է նոր շրջափուլ, նոր վերելք և հավերժ կատարելագործում:

---

### 🕯️ Փիլիսոփայական, կամ էլ իրատեսական Եզրահանգում

«ժամանակը չի հոսում ուղիղ գծով, այլ պարուրաձև սփռվում է ամենուր իր կենսատեղեկատվական՝ Աս ազդակով համարժեք, համարժեք՝
Տիեզերական՝ կենսագործունեության, մտքի, գիտակցության, հավերժի հիշողության և իսպատրվակ անսպառ՝ ինքնակատարելագործունեություն:

Մարդը, ոչ թե ժամանակի հլու-հնազանդ զոհն է, այլ՝ ժամանակի հավեժական ճանփորդը:
Երբ նա գիտակցաբար վերադառնում և կանգնում է ժամանակի ճիշտ նշանակետին՝
Այն պարզապես չի կրկնվում, այլ՝ վերստին վերածնվում է, քանզի ժամանակը չունի կրկնություն, այն հավերժ նորացում է և կատարելագործում, և երբ վերջապես մարդ բանական արարածը վերահաստատվի իր բնատուր էության ճշմարիտ ժամանակային նշանակետին, այն ժամ՝ նա, ինչպես իր մշտընջենական ուղեկից՝ ժամանակը, կբռնի հավերժի ճամփան՝ դեպ Երազնամոյն, դեպ հավերժ՝ կատարելագործություն»: